## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ




Խմբագրության հասցեն— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։*

**Адрес редакции**—Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.



Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

**№ 15**
**ՕԳՈՍՏՈՍ**
**1963**

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

*Լույս է տեսնում ամիսը երկու անգամ*


### ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

## ԿԱՏԱՐՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՈՒՆԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

*ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը կարևոր իրադարձություն էր մեր պարտիայի և ժողովրդի գաղափարական-քաղաքական կյանքում։ Պլենումը ընդհանրացրեց գաղափարական աշխատանքի փորձը, բացահայտեց աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում եղած թերությունները, սահմանեց կոմունիզմի ծավալուն կառուցման ներկա ժամանակաշրջանում գաղափարական աշխատանքի հիմնական ուղղությունները և կոնկրետ խնդիրները։*

*Կոմունիզմի գիտակից և ակտիվ կառուցողի, նոր մարդու ձևավորման ու դաստիարակման գործում զգալի աշխատանք է կատարվում մեր գործարանում։ Պարտբյուրոյին կից ստեղծված է գաղափարական հանձնաժողով, որտեղ ընդգրկված են արտադրության առաջավորներ, գործարանի ինժեներներ ու ծառայողներ, ագիտատորներ։ Այդ հանձնաժողովն ունի հինգ սեկցիաներ, որոնցից մեկը զբաղվում է ագիտացիոն-մասսայական աշխատանքների հարցերով։ Սեկցիայի ղեկավարն է փորձված ագիտատոր, գործարանի դիրեկտորի տեղակալ ընկ. Գ. Աբրահամյանը։ Պարտբյուրոյի սենյակում հաճախ կարելի է տեսնել ընկ. Աբրահամյանին ագիտատորներով շրջապատված, որոնք գալիս են նորություններ ու խորհուրդներ ստանալու, չպարզաբանված հարցերին պատասխան փնտրելու։ Սեկցիան հաճախակի ագիտատորների համար անց է կացնում սեմինար պարապմունքներ, հրահանգավորումներ,*

զեկուցումներ պարտիայի XXII համագումարի, ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան և վերջերս կայացած հունիսյան պլենումի որոշումների վերաբերյալ, ապահովում է նրանց գրականությամբ, դիտողական ագիտացիայի նյութերով։

Այդ բոլորի շնորհիվ մեր ագիտատորների աշխատանքը դարձել է ավելի նպատակասլաց։ Հավաքման № 1 ցեխի ագիտատոր Օ. Զատիկյանը սիրված ու հարգված է իր աշխատանքային ընկերների շրջանում։ Քանի-քանի անգամ աշխատանքի ընդմիջման ժամերին նրան հանդիպել ենք բանվորների հետ զրուցելիս տարբեր թեմաների շուրջը։ Նրան իրավամբ անվանում են բանվորների խորհրդատու։ Ագիտատոր Զատիկյանի բրիգադը ներկայումս պայքարում է կոմունիստական աշխատանքի կոչմանն արժանանալու համար։ Դրական ու հետաքրքիր աշխատանք են կատարում նաև վերանորոգման ցեխի ագիտատոր Մ. Քեշիշյանը, առաքման բաժնի ագիտատոր Ջ. Մանուկյանը, մեխանիկական ցեխի ագիտատոր Ա. Դեխտեկյանը և շատ ուրիշներ, որոնք քաղաքական ագիտացիան կապում են իրենց տեղամասի աշխատանքի և պրակտիկ խնդիրների հետ։

Չնայած այն բանին, որ գործարանում 60-ից ավելի ագիտատորների հետ ամիսը մեկ անգամ սեմինարներ է կազմակերպվում, ներկայումս ագիտատորներից շատերը մասնակցում են պարտշրջկոմին կից երկամսյա ագիտատորների դպրոցի պարապմունքներին, որտեղ նրանք ուսումնասիրում են շրջանի մյուս արտադրական ձեռնարկությունների ագիտատորների առաջավոր փորձը, ծանոթանում շրջանի, քաղաքի, ռեսպուբլիկայի նվաճումներին։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքների սեկցիային օգնում է թվատախտակների տպման տեղամասի պետ Ռ. Բաղալյանը։ Նա պարտբյուրոյի հանձնարարությամբ, ագիտատորների հետ միասին միշտ պլանավորում է զրույցների համար այն թեմաները, որոնք կապված են գործարանի առջև դրված խնդիրների հետ և բխում են բանվորների ցանկություններից, հուզում նրանց։ Այս հանգամանքը լուրջ բեկում է մտցրել քաղաքական ագիտացիայի գործում։ Եթե նախկինում որոշ ցեխերում ու տեղամասերում լինում էին առանձին աշխատողներ, որոնք ակտիվորեն չէին մասնակցում զրույցներին, ապա այժմ բոլորն էլ մասնակցում են զրույցներին և ոչ միայն մասնակցում, այլև





ակտիվորեն հանդես են գալիս, մտցնում առաջարկություններ արտադրությունը բարելավելու մասին և ձեռնամուխ լինում այդ առաջարկությունների կատարմանը։ Այժմ ագիտատորները երկու օրը մեկ անգամ զրույցներ են ունենում ունկնդիրների հետ։ Բանվորների հետ զրույցներ են ունենում նաև ռեսպուբլիկայի գիտության և կուլտուրայի գործիչները։ Միայն այս տարվա անցած 7 ամիսների ընթացքում կոլեկտիվում անց է կացվել տարբեր հարցերի վերաբերյալ շուրջ 70 դասախոսություն։ Կոլեկտիվի անդամների առջև հանդես են եկել ռեսպուբլիկայի գիտության ու կուլտուրայի ճանաչված գործիչներից 30 հոգի։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի սեկցիան հատուկ ուշադրություն է դարձրել ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների մասսայականացման վրա։ Հանդիպում է կազմակերպվել Կենտկոմի հունիսյան պլենումի մասնակից, կուլտուրայի մինիստր ընկ. Հ. Մարգարյանի հետ, որը հանգամանորեն պատմեց Կենտկոմի պլենումի աշխատանքների մասին։ Մեր գործարանի ագիտատորների, դասախոսների, ինչպես նաև ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի աշխատակիցների, Խ. Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտի և պոլիտեխնիկական ինստիտուտի դասախոսների ուժերով, Կենտկոմի պլենումի որոշումների կապակցությամբ, բոլոր ցեխերում անցկացվեցին զրույցներ։ Հետաքրքիր ու բովանդակալից զրույցներ ու դասախոսություններ են կազմակերպվել ՌՍԴԲՊ II համագումարի 60-ամյակի առթիվ։

Մեր գործարանի բոլոր ցեխերն ու բաժինները, տեղամասերը ռադիոֆիկացված են։ Այս հանգամանքը հմտորեն է օգտագործում ագիտացիոն-մասսայական աշխատանքի սեկցիան։ Ամեն օր ընդմիջման ժամին ռադիոհանգույցով ելույթներ են ունենում առաջավոր բանվորներից, կոմունիստական աշխատանքի շարժման մասնակիցներից շատերը, հաղորդումներ են կազմակերպվում միջազգային դրության, նոր տեխնիկայի, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, բժշկության և շատ այլ հետաքրքիր հարցերի մասին։

Նոր մարդու, կոմունիզմ կառուցող մարդու ձևավորման, դաստիարակման գործում կարևոր և բացառիկ դեր է խաղում ստորին մամուլը։ Մեր գործարանում լույս են ընծայվում ավելի քան 50 անուն պատի թերթ,

երգիծական բյուլետեններ և այլն, որոնք պայքարում են խոտանարարների և աշխատանքային կարգ ու կանոնը խախտողների դեմ։ Այսպես, ավտոմատ ցեխում բանվոր Վ. Ալեքսանյանը հաճախակի խոտան դետալներ էր արտադրում։ Ցեխի, ինչպես նաև գործարանի ղեկավարների բազմիցս զգուշացումներն ու ձեռնարկված ադմինիստրատիվ միջոցները ոչնչով չազդեցին նրա վրա։ Մենք փորձեցինք ուրիշ ձևով մոտենալ նրան։ Հրատարակվեց հատուկ թերթիկ, որտեղ խիստ պարսավանքի խոսքեր էր ասված նրա և իր վարպետի հասցեին։ Այդ միջոցը իրոք ազդեց։ Նա մի քանի անգամ եկավ պարտբյուրո, խոստացավ այլևս խոտան արտադրանք չտալ։ Կատարելով իր խոստումը այժմ Ալեքսանյանը խոտան չի արտադրում։

Մեր ագիտատորների առաջնահերթ խնդիրներից մեկն է աշխատողներին դաստիարակել կոլեկտիվիզմի, ընկերասիրության, մարդասիրության, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի ոգով։

Կոմունիստական աշխատանքի շարժման հենց սկզբի օրերից, մեր գործարանի մեխանիկական ցեխի կոլեկտիվը առաջիններից էր ռեսպուբլիկայում, երբ սկսեց պայքարել այդ պատվավոր կոչմանն արժանանալու համար։ Կոմունիստական աշխատանքի կոչմանն արժանացած Ա. Այվազյանի, Ս. Աբգարյանի, Մ. Օվականյանի և շատ ուրիշների բրիգադներում մեկը բոլորի, բոլորը մեկի համար սկզբունքը պրակտիկ գործ է դարձել։ Նշված բրիգադները արդեն վաղուց է, որ հրաժարվել են տեխնիկական վերահսկողության աշխատողներից և ձգտում են թողարկել միայն լավորակ արտադրանք։

Աշխատանքի առաջավոր այս փորձը սեկցիան մասսայականացրեց գործարանի բոլոր ցեխերում։

Գնալով ավելի մեծ թափ է ստանում կոմունիստական աշխատանքի շարժումը ամբողջ գործարանում։ Մեխանիկական, հավաքման, № 2 ցեխերի տասնյակ բրիգադներ արդեն արժանացել են այդ բարձր ու պատվավոր կոչմանը։ Գործարանի կոլեկտիվը ամեն ինչ անում է, որպեսզի մինչև այս տարվա վերջը ամբողջ գործարանը արժանանա կոմունիստականի բարձր կոչմանը։

Մեր ագիտատորների տեսադաշտում միշտ մարդն է եղել։ Նրանք իրենց ընկերական խորհուրդներով շատ շատերին են օգնել։ Գործարանի աշխատողները լավ են



ճանաչում հավաքման № 1 ցեխի առաջավոր բանվոր Օ. Խաչատրյանին։ Նա խորին երախտագիտությամբ է խոսում գործարանի ագիտատորների, ամբողջ կոլեկտիվի և անձամբ ցեխի վարպետ, ագիտատոր Ռ. Տեր-Աստվածատրյանի մասին, որոնք օգնեցին նրան և նա աշխատանքում ու կենցաղում դարձավ օրինակելի։ Այդ կապակցությամբ նա ասում է, որ այդ նրանք էին, որ ինձ ժամանակին շուտ ազատեցին բանտից և արդեն 3 տարի է, ինչ աշխատում եմ հավաքման ցեխում և շրջապատված եմ հոգատար ընկերներով։ Ես նրանց շատ բանով եմ պարտական։ Օնիկը հիմա 4 երեխաների հայր է և բացի լավ աշխատող լինելուց, նա նաև լավ ծնող է։

Անցյալ տարի մամլման ցեխի աշխատող, կոմերիտական Վ. Ղարիբյանը հակահասարակական արարք էր կատարել, որի համար նրան հեռացրել էին տեխնիկումից և նույնիսկ քրեական գործ էր հարուցվել նրա նկատմամբ։ Մենք Վոլոդյայի դաստիարակման գործը վերցրեցինք մեր վրա, և հիմա նա ուղղվել ու փոխվել է ամբողջովին, դարձել առաջավոր բանվոր։

Պետք է նշել, որ մեր կոլեկտիվում մոտավորապես մեկ տարի է, ինչ ոչ մի հակահասարակական երևույթ չի նկատվել։ Գաղափարական-դաստիարակչական աշխատանքների լավ դրվածքը մեծապես նպաստում է մեր գործարանի առջև դրված խնդիրների կատարման գործին։ 1963 թվականի առաջին կիսամյակի համախառն արտադրանքի թողարկման պլանը կատարվել է 104,5 տոկոսով, իսկ հուլիսի պլանը՝ ժամկետից չորս օր շուտ։ Գործարանը երկրին տվել է 126 հազար ռուբլու արտապլանային արտադրանք։ Պլանից դուրս թողարկված է մոտ 11.722 հատ տարբեր մարկաների ժամացույցներ։

Նոր տեխնիկայի, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման ուղղությամբ ձեռք ենք բերել զգալի հաջողություններ։

Մենք ձեռք բերածով չենք հանգստանում։ Գործարանի ագիտատորները առաջիկայում ավելի բովանդակալից և ավելի նպատակասլաց ագիտացիոն-բացատրական աշխատանք կկատարեն աշխատավորների լայն շրջանում։

Ա. ՀԱԿՈԲՅԱՆ
Երևանի ժամացույցի գործարանի
պարտբյուրոյի քարտուղար

# ԹՎԵՐԸ ԵՎ ՀԱՄԵՄԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

*Թվական նյութերի օգտագործման անգերազանցելի վարպետ էր Վ. Ի. Լենինը։ Նա սովորեցնում էր ագիտատորներին այս կամ այն հարցերն ունկնդիրներին բացատրել կամ պարզաբանել «ձեռքում ունենալով փաստեր ու թվեր», ինքն էլ մեծ վարպետությամբ ցույց էր տալիս, թե ինչպես այդ պետք է կատարել։ Լենինի աշխատություններում մենք հաճախ ենք հանդիպում թվերի, հաշվարկների ու աղյուսակների։ Նրանցից ելնելով, Լենինը տեսական հետևություններ էր անում, քաղաքական լոզունգներ ձևակերպում։*

*Ունկնդիրների հետ զրույցներ անցկացնելիս ագիտատորը սովորաբար դիմում է թվական փաստերին, լայնորեն օգտագործում այն՝ համեմատություններ, հակադրություններ անելու կամ իր ասած միտքը հաստատելու համար։ Ստույգ թվերը և կյանքից վերցրած ճշմարտացի փաստերը ագիտատորի մշտական ու հավատարիմ օգնականներն են։ Նրանցում արտացոլվում են մեր նվաճումները, կոմունիստական շինարարության պլանները, նրանք բնութագրում են արտադրության առաջավորների հաջողությունները, բացահայտում չօգտագործված ռեզերվները, մատնանշում թերությունները։*

*Քաղաքական աշխատանքում առավել փորձ ունեցող ագիտատորները, որոնք տիրապետում են բանավոր խոսքի վարպետությանը, կարողանում են հմտորեն և լրիվ օգտագործել թվերի, փաստերի և համեմատությունների հնարավորությունները։ Օրինակ, Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի № 29 մոնտաժային տեղամասի ագիտատոր Ն. Մովսիսյանը իր հերթական զրույցներից մեկի ընթացքում բերեց պարտիայի XXII համագումարի կողմից նախագծված պլանների և գործարանի արտադրության աճի վերաբերյալ թվեր։*

*— Այդ թվերով արտահայտված է մեր կոլեկտիվի*



*հայրենանվեր աշխատանքը,— ասում է ագիտատորը։ Գործարանի թողարկած հազարավոր տրանսֆորմատորներ ու շարժական էլեկտրակայաններ արդեն լույս են սփռում հեռավոր Սախալինում ու Ինդոնեզիայում, Մեքսիկայում ու Ղազախստանում, Աղվանստանում ու Հնդկաստանում։ Հազարավոր մեքենաներ ուժ են տալիս Լեհաստանի ածխահատին ու Քաջարանի հանքափորին, Կամչատկայի ձկնորսներին ու հեռավոր հյուսիսի բևեռախույզին... Այդ թվերի տակ կյանք է, կյանքն այսօրվա պայծառ, կյանքը գալիք՝ ավելի լուսաշող։*

*Թվերը նպատակին և լավ օգտագործելը մեծ արվեստ է։ Այն ձեռք է բերվում փորձի միջոցով, քաղաքական-մասսայական աշխատանքի պրակտիկայում։*

*Յուրաքանչյուր ագիտատոր նախապատրաստվելով զրույցի պետք է հմտորեն օգտագործի թվական տվյալները։*

*Դիցուկ, ագիտատորը զրույց է անցկացնում մեր երկրի տնտեսական զարգացման մասին և անհրաժեշտ է համարում բերել թվական տվյալներ արդյունաբերության առանձին ճյուղերի զարգացման վերաբերյալ։ Նա կարող է բերել չուգունի արտադրության աճման օրինակը, ասելով, որ առաջին համաշխարհային պատերազմի տարիներին ցարական Ռուսաստանը չուգուն էր ձուլում 2,5 անգամ ավելի քիչ, քան Անգլիան։ Իսկ այժմ ՍՍՌՄ-ը չուգունի արտադրությամբ զգալիորեն գերազանցում է Անգլիային, Ֆրանսիային և Բելգիային միասին վերցրած։ Կամ, ագիտատորը խոսում է պատերազմների կանխման, ընդհանուր և լրիվ զինաթափման համար Սովետական Միության հետևողական պայքարի մասին։ Անշուշտ, նա պետք է բերի պատերազմների կործանարար լինելու վերաբերյալ պատկերավոր թվեր։ Նա կարող է ասել, որ եթե բոլոր արժեքները, որոնք պատերազմների հետևանքով ոչնչացել են վերջին հազարամյակում, վերածենք ոսկու, ապա կարելի կլիներ նրանից պատրաստված 8 կիլոմետր լայնությամբ և 10 մետր հաստությամբ ժապավենով գոտևորել մեր երկրագունդը հասարակածի վրայով։*

*Որպեսզի ագիտատորը ցույց տա, թե կապիտալիստական երկրների կառավարողները, ռազմական մրցավազք հայտարարելով, ինչպիսի ծանրություն են դնում աշխատավորների ուսերին, նա կարող է բերել հետևյալ*

հետաքրքիր համեմատությունները, որ վերջերս տպա-
գրվեց մեր մամուլում: Բելգիայում «Սոցիալիստական
երիտասարդ գվարդիա» կազմակերպությունը լույս է
ընծայել «Պատերազմ՝ պատերազմին» պլակատը, որ-
տեղ հաղորդվում է, որ ժամանակակից մեկ գնդացիրը
արժե այնքան, որքան 2 գութանը, մեկ ավիառումբը՝
այնքան, որքան 5 բնակելի շենքը, տանկը՝ այնքան, որ-
քան նոր դպրոցը, ռեակտիվ ինքնաթիռը՝ այնքան, որ-
քան հիվանդանոցը, ռազմանավը՝ այնքան, որքան գոր-
ծարանը:

Նման օրինակներ մամուլում շատ կան: Ագիտատորը
թերթեր, ամսագրեր և գրքեր կարդալիս հաճախակի է
հանդիպում դրանց: Զրույցի համար օգտակար նման
թվեր ագիտատորը կարող է գտնել նաև գիտահանրա-
մատչելի տեղեկագրերում:

Հանդիպելով հետաքրքիր օրինակների, թվերի ու
փաստերի, ագիտատորը պետք է այն գրանցի հատուկ
ծոցատետրերում, համապատասխան կարգով և հաճա-
խակի դիմի այդ գրառումներին:

Սակայն թվական տվյալների և հաշվարկների պատ-
րաստի աղբյուրներից օգտվելը դեռ քիչ է: Ագիտատորը
պետք է կարողանա կազմել հաշվարկներ ու նման հա-
մեմատություններ և իր ունկնդիրներին հաղորդի թվա-
կան համոզիչ, պատկերավոր փաստեր:

Հաճախ ագիտատորի բերած մեր երկրի զարգացման
վերաբերյալ թվերը այնքան հսկայական են լինում, որ
ունկնդիրները չեն կարողանում լրիվ պատկերացում
կազմել: Բայց չէ՞ որ այդ թվերը կարելի էր ավելի պատ-
կերավոր ձևով ներկայացնել: Ասենք, մեր երկիրը կո-
մունիստական շինարարության քսանամյակի վերջում
կձուլի 250 միլիոն տոննա պողպատ: Թվական այդ հըս-
կայական տվյալը ինչպե՞ս հասցնել ունկնդիրների գի-
տակցությանը:

Կարելի է այն համեմատել պողպատի այժմյա մա-
կարդակի հետ՝ 76,3 միլիոն տոննա պողպատի հետ և
ասել, որ 1980 թվականին պողպատի ձուլումը կգերա-
զանցի ավելի քան երկուս ու կես անգամ: Սովետական
պողպատաձուլները 1980 թվականին երկրին կտան 60
անգամ ավելի պողպատ, քան ձուլվում էր ցարական
Ռուսաստանում:

Կամ կարելի է համեմատություններ անել կապիտա-
լիստական խոշորագույն երկրների պողպատի ժամա-



նակակից արտադրության հետ: Օրինակ՝ 1980 թվակա-
նին մեր երկրում պողպատ կարտադրվի գրեթե երեք
անգամ ավելի, քան ԱՄՆ-ում, մոտ 8 անգամ ավելի,
քան Արևմտյան Գերմանիայում, տասնմեկ անգամ շատ,
քան Անգլիայում և այլն: Իսկ որքան ազդեցիկ կլինի, ե-
թե ասենք, որ մեր երկրում 1980 թվականին արտադրը-
վելիք պողպատի քանակը կլինի մոտավորապես այն-
քան, որքան այժմ պողպատ են ձուլում աշխարհի բոլոր
երկրները, բացի Սովետական Միությունից: Այդ նույն
թիվը՝ 250 միլիոն տոննա պողպատը, կարելի է մեկ-
նաբանել և այլ կերպ: Մետաղի այդ քանակից կարելի
է պատրաստել գրեթե 45 միլիոն տրակտոր:

Ենթադրենք, որ ագիտատորը խոսում է տվյալ կո-
լեկտիվի ռացիոնալիզատորների ու գյուտարարների աշ-
խատանքի մասին և նշում, որ անցյալ տարի մեր ամ-
բողջ երկրի մասշտաբով ռացիոնալիզատորների և գյու-
տարարների առաջարկությունների ներդրումը մեր երկ-
րին տվել է մեկ միլիարդ 700 միլիոն ռուբլու տնտե-
սում: Պատկերավորության համար ագիտատորը ավե-
լացնում է, որ այդ գումարով կարելի է կառուցել ավելի
քան 6.540 բնակելի շենք՝ մի հսկայական քաղաք, որը
բնակչության թվով երկու անգամ կգերազանցի Երևա-
նին:

Երբ խոսքը գնում է էլեկտրաէներգիայի այս կամ
այն քանակի մասին, անհրաժեշտ է այն համեմատելու
համար բերել ելակետային հետաքրքիր տվյալներ ու
թվեր: Կարելի է ասել, օրինակ, որ մեկ կիլովատ-ժամ
էներգիան բավական է, որպեսզի արդյունահանվի 50
կիլոգրամ ածուխ, թխվի 88 կիլոգրամ հաց կամ ար-
տադրվի 10 մետր բամբակե գործվածք: Օգտակար կլինի
ունկնդիրներին նաև հիշեցնել, որ ԳՈԷԼՌՈ-ի պլանով
նախատեսված 8,8 միլիարդ կիլովատ ժամը, որը էլեկ-
տրաէներգիայի արտադրության մեկ տարվա չափն էր:
այժմ ՍՍՌՄ էլեկտրակայանները արտադրում են ընդա-
մենը տասն օրում:

Թվական տվյալների, համեմատությունների մի-
ջոցով ագիտատորը կարող է պատկերավոր կերպով
ցույց տալ կապիտալիստականի նկատմամբ սոցիալիս-
տական հասարակական կարգերի առավելությունները:
Ահա օրինակներ: Սովետական Միությունում յուրա-
քանչյուր հազար բնակչի հաշվով կառուցվում է գրեթե
երկու անգամ ավելի բնակարան, քան ԱՄՆ-ում և

Ֆրանսիայում, երկու անգամից ավելի, քան Անգլիայում և Իտալիայում։ ՍՍՌՄ-ում յուրաքանչյուր տասը հազար բնակչին ընկնում է 19 բժիշկ, իսկ ԱՄՆ-ում 12, Անգլիայում 11։

Զրույցի նախապատրաստվելիս ագիտատորները ուշադրություն պետք է դարձնեն տեղական փաստերի ու թվերի ընտրության, մշակման և դրանք վառ կերպով ու հետաքրքիր ձևերով ունկնդիրներին ներկայացնելու վրա։ Այդ թվական տվյալները յուրաքանչյուր ագիտատոր կարող է վերցնել գործարանի պլանային բաժնից կամ կոլտնտեսության հաշվապահությունից, ցուցադրական ագիտացիայի նյութերից, որտեղ կան դիագրամաներ, պլանների կատարման ընթացքը ցույց տվող տվյալներ և այլն։

Կարևոր է հիշել, որ զրույցի ժամանակ կարիք չկա բերել առանձնապես շատ թվեր։ Անհրաժեշտ է ընտրել միայն ամենակարևորները, բնորոշ թվերը, համեմատության ու հակադրության միջոցով բացահայտել նրանց իմաստը, նշանակությունը։ Միայն այդ դեպքում նրանք կտպավորվեն ունկնդիրների հիշողության մեջ։

Զրույցը հետաքրքիր ու տպավորիչ անցկացնելու գործում մեծ է նաև ցուցադրական նյութերի դերը։ Յուրաքանչյուր ագիտատորի տրամադրության տակ ցուցադրական այդպիսի նյութեր շատ կան։ Դրանք են՝ աշխարհագրական քարտեզը, դիագրամաները, պլակատները, ֆոտոցուցահանդեսները, ցուցափեղկերը և այլն։ Տեսողական հիշողության վրա ազդելով, ցուցադրական նյութերը նպաստում են ագիտատորի ասածը ավելի պարզ ու խորը պատկերացնելու։

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ



# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԻ ԲՐԻԳԱԴԻ ՄԱՍԻՆ

Երևանի էլեկտրաապարատների գործարանի մեխանիկական ցեխում տոն էր։ Արտադրական պլանի և սոցիալիստական պարտավորությունների լավագույն կատարման համար ցեխի կոլեկտիվը նվաճել էր գործարանի փոխանցիկ կարմիր դրոշը։ Այդ հաջողությունը հեշտ ճանապարհով չի նվաճվել։ Բրիգադի անդամների հիշողության մեջ դեռ թարմ է ՍՄԿՊ XXII համագումարի տարեդարձի օրը հրավիրված ժողովը, որտեղ նրանք ամփոփեցին կատարված աշխատանքի արդյունքները և ստանձնեցին նոր պարտավորություններ։ Ժողովում ելույթ ունեցան կոմունիստական աշխատանքի բրիգադի անդամներ՝ Ա. Գասպարյանը, Մ. Մարտիկյանը, Ռ. Դեմիրխանյանը և ուրիշներ, որոնք իրենց աշխատանքային խանդավառությամբ ու ջերմ կոչով ոգևորեցին բոլորին, և ամբողջ ձեռնարկությունը ստանձնեց նոր բարձր պարտավորություններ։

Ովքե՞ր են այդ բրիգադի անդամները և ի՞նչ հաջողություններ են նվաճել։

Բրիգադը համարձակորեն կարելի է անվանել կոմերիտական-երիտասարդական, քանի որ նրա 11 անդամներից 7-ը կոմերիտականներ են, իսկ մեկը՝ ՍՄԿՊ անդամության թեկնածու։ Բրիգադի ղեկավարը՝ Խ. Ավետիսյանը, ձեռնարկությունում աշխատում է արդեն 7 տարի՝ գործարանի հիմնադրման օրից։ Մյուս անդամները նրա նախկին աշակերտներն են՝ Կ. Քոչարյանը, Ս. Սարոյանը, Ռ. Դեմիրխանյանը, Ա. Գասպարյանը, որոնք այժմ գործարանի լավագույն բանվորներից են և ուժ ու եռանդ չեն խնայում գործարանային մարկայի պատիվը բարձր պահելու համար։ Վերջիններս իրենց հերթին մի շարք սկսնակ աշխատողների, օրինակ, Մ. Մարտիկյանին, Հ. Սարգսյանին, Ա. Գասպարյանին սովորեցրել և դարձրել են վարպետներ, որոնք նույնպես լավ են աշխատում բրիգադում, և իրենց ավագ ընկերների օրինակով սիստեմատիկաբար բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը ու իրենց գիտելիքների մակարդակը։

Բրիգադի 11 անդամից յոթը ծառայել են սովետական բանակի շարքերում և վերադարձել արտադրություն։

Այս փոքր կոլեկտիվի համախմբվածությանն ու նրա աշխատանքի արդյունքներին կարող են նախանձել բոլորը։ Այստեղ ուսանելի բան շատ կա։

Բրիգադն արտադրում է գործարկման ապարատուրայի մոտ 50 անուն դետալ։ Մրցելով և օգնելով միմյանց, բրիգադի անդամները ապահովում են արտադրանքի գերազանց որակ, արտադրական նորմաներն ամեն օր գերակատարում են 25—40 տոկոսով։ Նրանք մեծ ուշադրություն են դարձնում արտադրության ներքին ռեզերվների հայտնաբերմանն ու օգտագործմանը, նյութերի խնայողությանը։ Միայն վերջին ամսում խնայված պողպատից նրանք պլանից ավել պատրաստել են 200 վերին և 350 ներքին հոլան, 400 բուրակ և այլն։

Բրիգադի անդամները մտցրել են մի շարք ռացիոնալիզատորական առաջարկություններ, որոնք հաջողությամբ արմատավորվել են արտադրության մեջ, զգալիորեն բարձրացնում են աշխատանքի արտադրողականությունը, բարելավում են անվտանգության տեխնիկայի և աշխատանքի պահպանման պայմանները։ Միայն խառատային հաստոցների վրա որոշ դետալների մշակման գործում վերջերս մտցրած երկու ռացիոնալիզատորական առաջարկության շնորհիվ ստացվեց 4300 ռուբլու խնայողություն։

Չնայած զբաղվածությանը, բրիգադի անդամները լինում են քաղաքի ուրիշ ձեռնարկությունների համասեռ ցեխերում և ծանոթանում նրանց աշխատանքին։ Այդ նրանց թույլ է տալիս կարծիքների փոխանակություն կատարելու արտադրության կազմակերպման, նրա կուլտուրայի բարձրացման հարցերի շուրջը։ Դրականն անմիջապես արմատավորվում է արտադրության մեջ։ Այսպես, բրիգադի անդամները մխող ավտոմատների կոնաձև բույթերն այժմ մշակում են սարքաշինական գործարանի ավտոմատավորների օրինակով։

Նախատեսվում է լինել քաղաքի նաև այլ ձեռնարկություններում, մասնավորապես Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում։

Բրիգադի անդամների կյանքի հիմնական կանոններից մեկն է՝ հարստացնել գիտելիքները, բարձրացնել որակավորումը։ Չէ՞ որ գաղտնիք չէ, որ միայն տեխնիկայի գրագետ օգտագործումը կարող է տալ լավ արդյունքներ։ Միայն գործիմացությամբ աշխատելու, գործի մեջ խորամուխ լինելու միջոցով կարելի է բարելավել տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։ Կ. Քոչարյանն ու Ռ. Դեմիրխանյանը սովորում են բարձրագույն ուսումնական հաստատություններում, Մ. Մարտիկյանը՝ տեխնիկումում, բրիգադի անդամներից երեքը սովորում են բանվորի դպրոցում, երկուսը պատրաստվում են այս տարի ընդունվելու բուհ, մնացածները շարունակում են ուսումը դպրոցում։

Այստեղ բոլորը միմյանց օգնում են որակավորման բարձրացման գործում։ Ով ավելի բարձր կարգի մասնագետ է, մնացածներին տեսականորեն ու գործնականորեն օգնում է հասնելու իրեն, բարձրացնելու որակավորման իր կարգը։

Փոքր կոլեկտիվի անդամները ակտիվորեն մասնակցում են նաև ձեռնարկության հասարակական կյանքին։ Բրիգադավարը ցեխի արհմիութենական կոմիտեի անդամ է, Ռ. Դեմիրխանյանը՝ կոմերիտական կազմակերպության քարտուղար, Մ. Մարտիկյանը՝ գործարանի ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության պարտիական հանձնաժողովի անդամ, Կ. Քոչարյանն ագիտատոր է և այլն։

Կոմունիստական աշխատանքի բրիգադի անդամների լոզունգն է՝ «սովորել, աշխատել և ապրել կոմունիստաբար»։ Նրանք գիտեն, որ հարկավոր է ոչ միայն կազմակերպված ու համերաշխ աշխատել արտադրության մեջ, սովորել, այլև կոլեկտիվ կերպով ու կազմակերպված անցկացնել ազատ ժամերը։ Ընտանիքների անդամները կապված են միմյանց հետ, հաճախ լինում են միմյանց մոտ։ Վերջերս բրիգադի անդամներն իրենց ընտանիքներով կոլեկտիվ կերպով դիտեցին «Մեծ ճակատագիր» ներկայացումը, եղան կենդանաբանական այգում, հաճախ լինում են կինոթատրոնում, այնուհետև հավաքվելով, կարծիքներ են փոխանակում իրենց տեսածի ու լավի շուրջը։

Այս բրիգադը լավ պլաններ շատ ունի, բայց նրա գլխավոր անելիքն է՝ համարձակորեն կենսագործել պարտիայի XXII համագումարի որոշումները և արժանավայել ավարտել յոթնամյակի հինգերորդ տարին։

Վ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

ՀԿԿ Երևանի քաղկոմի արդյունաբերության և տրանսպորտի բաժնի վարիչ

# ՊԵՐՃԱԽՈՍ ԹՎԵՐ

## ՍՍՌՄ արդյունաբերության հուժկու վերելքը

Մեր երկրի աշխատավորները հարազատ կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ պանծալի հաջողությունների են հասել ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում: Ի բարօրություն սովետական ժողովրդի անընդհատ ծաղկում ու բարգավաճում է մեր հայրենիքի արդյունաբերությունը: Ահա թվեր և փաստեր այդ մասին:

*Վերջին տասը տարվա ընթացքում ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումն ավելացավ գրեթե երեք անգամ։*

*Պողպատի ձուլման, նավթի արդյունահանման, էլեկտրաէներգիայի, մետաղահատ հաստոցների, տրակտորների, ցեմենտի արտադրության ձեռք բերված աճը զգալիորեն գերազանցում է արտադրանքի այդ նույն տեսակների արտադրության նախորդ բոլոր 35 տարիների աճը։*

*Ժողովրդական տնտեսության կապիտալ ներդրումները համեմատելի գներով տասը տարում կազմեցին 280,5 միլիարդ ռուբլի, սովետական իշխանության՝ մինչև 1952 թվականը ընկած բոլոր տարիների 132,4 միլիարդ ռուբլու դիմաց։*

*Տասը տարվա ընթացքում ՍՍՌՄ-ում գործարկված է 8.400 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն։ Այդ նույն ժամանակաշրջանում ազգային եկամուտն աճել է գրեթե երկուս և կես անգամ։*

*Սպառման հանրային ֆոնդերը 1952 թվականի 12,9 միլիարդ ռուբլուց 1962 թվականին հասան 28,4 միլիարդ ռուբլու։ Նույն ժամանակամիջոցում 2,6 անգամ ավելացավ ապրանքաշրջանառությունը։*

*Կոմունիստական աշխատանքի համար համաժողովրդական շարժման մեջ ընդգրկված են ավելի քան 20 միլիոն մարդ։ Շուրջ մեկ միլիոն ինժեներա-տեխնիկական աշխատողներ ընդգրկված են հասարակական հիմունքներով գործող կոնստրուկտորական բյուրոներում, տեխնիկական անալիզի բյուրոներում, գործարաններին ու կառույցներին կից հասարակական սկզբունքով ստեղծված ինստիտուտներում ու լաբորատորիաներում։*

*Ավելի քան 5 միլիոն մարդ է միավորում իր մեջ ռացիոնալիզատորների և գյուտարարների համամիութենական ընկերությունը և գիտատեխնիկական ընկերությունը։*



*Պարտիայի Կենտկոմի 1958 թվականի մայիսյան պլենումից հետո անցած միայն վերջին 5 տարում ՍՍՌՄ-ի քիմիական արդյունաբերությունը տվել է այնքան արտադրանք, որքան սովետական իշխանության քառասուն տարիներին։*

*Եթե տասը տարի առաջ, 1953 թվականին, ՍՍՌՄ-ում արտադրվել է 6,9 միլիոն տոննա հանքային պարարտանյութ, ապա միայն այս տարվա առաջին եռամսյակում այն հասել է 9,4 միլիոն տոննայի։*

*Այս տարվա առաջին կիսամյակում մեր երկրում արտադրվել են 151 հազար տոննա արհեստական և սինթետիկ թելեր, այնինչ, 1953 թվականին արտադրանքի այդ տեսակներից արտադրվել է ընդամենը 62,3 հազար տոննա։*

*Ավտոդողերի արտադրությունը 1963 թվականի առաջին կիսամյակում ՍՍՌՄ-ում հասել է 11 միլիոն հատի, այնինչ տասը տարի առաջ, 1953 թվականին արտադրվել է 8,1 միլիոն հատ։*

*Մեր երկրում բարձր զարգացման է հասել մետաղի արդյունաբերությունը։ Եթե 1953 թվականին ՍՍՌՄ-ում արտադրվել է 38,1 միլիոն տոննա պողպատ, ապա այս տարվա 6 ամսում այն հասել է 39,6 միլիոն տոննայի։ 1953 թվականին արտադրվել է 27,4 միլիոն տոննա չուգուն, իսկ այս տարվա 6 ամսում՝ 28,7 միլիոն տոննա։*





Այս տարվա առաջին կիսամյակում մեր երկրում արտադրվել է 67 միլիոն տոննա երկաթե հանքաքար, որը 5,4 միլիոն տոննայով գերազանցում է 1953 թվականի արտադրանքը։

Անցած կիսամյակում երկրում արդյունահանվել է 99 միլիոն տոննա նավթ, 1953 թվականի 52,7 միլիոն տոննայի դիմաց։

Տասը տարի առաջ մեր երկրում արտադրվել է ընդամենը 6,8 միլիարդ խորանարդ մետր գազ, իսկ այս տարվա անցած կիսամյակում այն հասել է 44,5 միլիարդ խորանարդ մետրի։

Այս տարվա առաջին կիսամյակում երկրում արտադրվել է 204 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, որը 1953 թվականի համեմատությամբ մոտ 70 միլիարդ կիլովատ ժամով ավելի է։

Տասը տարի առաջ մեր երկրում մագիստրալային ջերմաքարշեր և էլեկտրաքարշեր չեն արտադրվել, իսկ այժմ միայն անցած 6 ամսում արտադրվել է 700 հատ մագիստրալային ջերմաքարշ և 321 մագիստրալային էլեկտրաքարշ։

Այս տարվա առաջին կիսամյակում արտադրվել է 159 հազար տրակտոր՝ 1953 թվականի 111,3 հազար տրակտորի դիմաց։

Արդյունաբերական ձեռնարկությունները անցած կիսամյակում յուրացրել և պատրաստել են շուրջ 300 նոր կարևորագույն տեսակի մեքենաներ, սարքավորում, սարքեր և տարբեր կիրառման նոր տեսակի նյութեր։

**ՄԵԿ ՏԱՍՆԱՄՅԱԿ ԵՎ ԱՄԲՈՂՋ ԴԱՐ**

ՎԵՐՋԻՆ ՏԱՍ ՏԱՐՈՒՄ ՍՍՌՄ-ՈՒՄ ԱՐԴՅՈՒՆԱՀԱՆՎԵԼ Է ԱՎԵԼԻ ՔԱՆ

**1.100.000.000**

**ՏՈՆՆԱ ՆԱՎԹ**

ԱՅԴ ԶԳԱԼԻ ՔԱՓՈՎ ԱՎԵԼԻ Է, ՔԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՀԱՆՎԵԼ Է ԱՆՑՅԱԼ ԴԱՐԻ ԿԵՍԵՐԻՑ ՄԻՆՉԵՎ 1953 Թ-Վ.





Նույն ժամանակաշրջանում արտադրությունից հանվել են հնացած կոնստրուկցիաների ավելի քան 120 տեսակի մեքենաներ, սարքավորում, ապարատներ և սարքեր։ Միայն ժողտնտխորհների մեքենաշինական ձեռնարկություններում մոդեռնացված է սարքավորման շուրջ 29 հազար միավոր։

Ժողովրդական տնտեսության մեջ անցած 6 ամսում արմատավորվել է շուրջ մեկ միլիոն 400 հազար գյուտ և ռացիոնալիզատորական առաջարկ, որոնք տարեկան հաշվով կտան ավելի քան 750 միլիոն ռուբլու տնտեսում։

Աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ, անցյալ տարվա համեմատությամբ, այս տարի առաջին կիսամյակում աճել է 6 տոկոսով։ Նույն ժամանակամիջոցում արդյունաբերության արտադրության ծավալը աճել է 8,5 տոկոսով։

Համախառն արտադրանքի թողարկման կիսամյա պլանը կատարված է 103 տոկոսով, իսկ անցած չորս և կես տարում, յոթնամյա պլանի այդ ժամանակամիջոցի առաջադրանքից դուրս, արտադրված է 33 միլիարդ ռուբլու արդյունաբերական արտադրանք։

Անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ, այս տարվա առաջին կիսամյակում, քիմիական արդյունաբերության արտադրանքը ավելացել է 17 տոկոսով, այդ թվում՝ սինթետիկ






ձյութեր և պլաստմասսաներ՝ 22 տոկոսով և այլն։

Արդյունաբերության զարգացման բնագավառում մեծ հաջողություններ են ձեռք բերվել նաև մեր ռեսպուբլիկայում։ Տասը տարվա ընթացքում Հայկական ՍՍՌ արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումը ավելացել է 2,6 անգամ, այդ թվում՝ քիմիական արդյունաբերությանը՝ 3,6 անգամ, մեքենաշինությանն ու մետաղամշակմանը՝ 5,3 անգամ։ 1953—1963 թվականներին ռեսպուբլիկայի արդյունաբերությունը թողարկել է 2,5 անգամ ավելի շատ արտադրանք, քան 1921—1952 թվականներին։

Այդ նույն ժամանակաշրջանում ռեսպուբլիկայում գործարկված է 75 խոշոր արտադրական ձեռնարկություն։

1953—1963 թվականների ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության կապիտալ ներդրումները 2 անգամ գերազանցում են 1921—1952 թվականների կապիտալ ներդրումների գումարին։

Ռեսպուբլիկայում կոմունիստական աշխատանքի կոչման համար պայքարում են 105 հազար մարդ, 93 արտադրական ձեռնարկություններ, 538 ցեխեր, հերթափոխություններ և տեղամասեր, հազարավոր բրիգադներ։

Այժմ մեր ռեսպուբլիկայում գործում են 14.000-ից ավելի ռացիոնալիզատորներ և գյուտարարներ։ Արտադրության մեջ ներդրըվել է 12.824 ռացիոնալիզատորական առաջարկ և 13 գյուտ, որոնք տվել են 11 միլիոն 599 հազար ռուբլու տնտեսական օգուտ։

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Աճում և ամրապնդվում է համաշխարհային կոմունիստական շարժումը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Կոմունիստական ինտերնացիոնալի առաջին կոնգրեսը, *Երկեր, հ. 28, էջ 591—620, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ողջույն իտալական, ֆրանսիական և գերմանական կոմունիստներին, *Երկեր, հ. 30, էջ 45—59, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ, *Երկեր, հ. 31, էջ 1—131, Հայպետհրատ, 1952։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Կոմունիստական ինտերնացիոնալի II կոնգրեսը, *Երկեր հ. 31, էջ 255—320, Հայպետհրատ, 1952։*



Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի բաց նամակը Սովետական Միության պարտիական կազմակերպություններին, բոլոր կոմունիստներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 16-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Ճառ. արտասանած Սովետական Միության և Հունգարական ժողովրդական Ռեսպուբլիկայի ժողովուրդների բարեկամության միտինգում 1963 թվականի հուլիսի 19-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 20-ի համարում։*

ՅԱՆՈՇ ԿԱԴԱՐ— Ճառ, արտասանած Սովետական Միության և Հունգարական ժողովրդական Ռեսպուբլիկայի ժողովուրդների բարեկամության միտինգում 1963 թվականի հուլիսի 19-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 20-ի համարում։*

Պարտիայի ու ժողովրդի անխախտ միաբանությունը, *«Պրավդա» թերթի 1963 թվականի հուլիսի 16-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 17-ին։*

## 2. Պատվով կատարենք յոթնամյակի հինգերորդ տարվա պլանները

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Տեխնիկական քաղաքականության ղեկավարման կենտրոնացումը և տնտեսական շինարարության կառավարման կատարելագործումը, *ՍՄԿՊ Կենտկոմի 1962 թվականի նոյեմբերյան պլենումին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1962։*

Յա. ԶԱՐՈԲՅԱՆ— Վսեմ նպատակի մեծ ուղիներով, *հոդված, տպագրված «Լենինյան ուղիով» ամսագրի 7-րդ համարում։*

Բացառիկ կարևորություն ունեցող գործ, *«Պրավդա» թերթի 1963 թվականի հուլիսի 4-ի առաջնորդողը, տպագրված «Ս .Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 5-ի համարում։*

## 3. Կերի կուտակումը և հացահատիկի բերքահավաքը օրվա հրատապ խնդիրն են

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ամրապնդել և բազմապատկել գյուղատնտեսության զարգացման հաջողությունները: Ավելի լրիվ բավարարել բնակչության պահանջմունքները գյուղատնտեսական մթերքների ասպարեզում, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, էջ 104—112, Հայպետհրատ, 1961։*

Պետությանը վաճառվող հացահատիկի ավելացման ասպարեզում Կրասնոդարի երկրամասի կոլտնտեսությունների ու սովխոզների սոցիալիստական պարտավորությունների մասին, ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 25-ի համարում։*

Հանրային հոտն ապահովել կերի առատ պաշարով, ՀԿՊ Կենտկոմում և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 12-ի համարում։*

Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի գյուղատնտեսության

ղեկավարման բյուրոյում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 23-ի համարում։*

Անասնապահների աննախանձելի հոգսերը, *«Պրավդա» թերթի 1963 թվականի հուլիսի 18-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 19-ի համարում։*

«Սովետական Հայաստանը» շրջում է ռեսպուբլիկայի դաշտերում, կերի կուտակման և բերքահավաքի աշխատանքների ստուգման տասնօրյակի վերաբերյալ ինֆորմացիոն նյութեր, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 12-ից 25-ի համարներում։*

Կատարել ու գերակատարել կերի կուտակման առաջադրանքները, *«Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 11-ի առաջնորդողը։*

Պատվավոր քննությունն սկսված է, *«Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 23-ի առաջնորդողը։*

## 4. Նոր հաջողություններ կոմունիզմի կառուցման ճանապարհին

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1963 թվականի առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին, ՍՍՌՄ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 21-ի համարում։*

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1963 թվականի առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին, Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 26-ի համարում։*

## 5. Ընդունված որոշումների կատարումը մեր սրբազան պարտքն է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, արտասանած ՌՍՖՍՌ-ի արդյունաբերության և շինարարության աշխատողների խորհրդակցությունում 1963 թվականի ապրիլի 24-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի ապրիլի 26-ի և 27-ի համարներում։*

Յա. ԶԱՐՈԲՅԱՆ— Հիմնականը ակտիվորեն կյանքի մեջ թափանցելն է, *հոդված, տպագրված «Պրավդա» թերթի 1963 թվականի հուլիսի 22-ի համարում, արտատպված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 23-ի համարում։*

Կատարելագործել ժողովրդական տնտեսության պլանավորումը, ռեսպուբլիկայի պարտիական-տնտեսական ակտիվի խորհրդակցության նյութերը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 10-ի համարում։*

## 6. Կառուցենք արագ, ամուր և էժան

*(Շինարարի օրվա առթիվ)*

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, արտասանած ՌՍՖՍՌ-ի արդյունաբերության և շինարարության աշխատողների խորհրդակցությունում 1963 թվականի ապրիլի 24-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի ապրիլի 26-ի և 27-ի համարներում։*

Բոլոր ուժերը գործի դնել կապիտալ շինարարության պլանի հաջող կատարման համար, ՀԿՊ Կենտկոմի նախագահության որոշումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մարտի 3-ի համարում։*

Ավելի արագորեն ավարտել սկսած կառույցները, *«Պրավդա» թերթի 1963 թվականի հուլիսի 8-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 9-ի համարում։*

## 7. Խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը ՍՍՌՄ արտաքին քաղաքականության հիմքն է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Զեկուցում հաշտության մասին 1917 թվականի հոկտեմբերի 26-ին (նոյեմբերի 8-ին) Սովետների համառուսաստանյան երկրորդ համագումարում, *Երկեր, հ. 26, էջ 295—306, Հայպետհրատ, 1951։*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի բաց նամակը Սովետական Միության պարտիական կազմակերպություններին, բոլոր կոմունիստներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 16-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Արդի միջազգային դրությունը և Սովետական Միության արտաքին քաղաքականությունը, զեկուցում ՍՍՌՄ Գերագույն սովետի սեսիայում 1962 թվականի դեկտեմբերի 12-ին, *առանձին գրքույկ, Հայպետհրատ, 1963։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, արտասանած 1963 թվականի հուլիսի 2-ին Բեռլինի աշխատավորության միտինգում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 3-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, արտասանած Սովետական Միության և Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ժողովուրդների բարեկամության միտինգում 1963 թվականի հուլիսի 19-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 20-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ պատասխանները «Պրավդա» և «Իզվեստիա» թերթերի թղթակիցների հարցերին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 27-ի համարում։*

Մթնոլորտում, տիեզերական տարածության մեջ և ջրի տակ միջուկային զենքի փորձարկումների արգելման պայմանագիր, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 26-ի համարում։*

Սովետական կառավարության հայտարարությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 4-ի համարում։*



ՀԿՊ Կենտկոմի ՍՏ. Շահումյանի անվան քաղաքական լուսավորության ռեսպուբլիկական տուն

## ԳԵՆՈՑԻԴԻ ԱԿՏ

Օրերս Սովետական Միությունը և Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկան իրենց համատեղ հայտարարության մեջ Իրաքի կառավարությունից պահանջեցին դադարեցնել քուրդ ժողովրդի դեմ սանձազերծած պատերազմը, որը իր բնույթով գենոցիդի ակտ է քրդերի նկատմամբ, որոնք արդար պայքար են մղում իրենց քաղաքական իրավունքների համար։ Ի՞նչ բան է գենոցիդի ակտը։

Գենոցիդ բառը լատիներեն է, որը նշանակում է սպանել, ոչնչացնել։ Գենոցիդի ակտ կատարել, այդ նշանակում է ծանրագույն հանցանք կատարել մարդկության նկատմամբ, ազգային, ռասայական խտրականության կամ դավանանքի պատճառով ոչնչացնել, սպանել բնակչության ամբողջ խմբեր։

Գենոցիդի ակտեր պարբերաբար կատարում են իմպերիալիստները, որոնք շահադիտաբար և տարբեր ազգերի աշխատավորների սարկության մեջ պահելու նպատակով կազմակերպում են ազգամիջյան ջարդեր և ազգամիջյան պատերազմներ։ Գենոցիդ հասկացողությունը կապված է ֆաշիզմի, ռասայականության մարդատյաց «թեորիաների» հետ, որոնք պրոպագանդում են ազգային թշնամանք։ Օրինակ, ԱՄՆ-ում ռասայական խտրականությունն է թագավորում։ Այստեղ էլ հենց վերջերս իշխանությունների թողտվությամբ ամերիկյան ռասիստները Ալաբամա նահանգի Բիրմենհեմ քաղաքում և երկրի շատ վայրերում սպանեցին, խոշտանգեցին ու բանտերը նետեցին բազմաթիվ նեգրերի, ռումբեր նետեցին սևամորթ բնակչության տները։

ԱՄՆ-ում տասնամյակներ անընդհատ ազգային թշնամանք է բորբոքվում նեգրերի դեմ։ Այստեղ նեգրերը իրավունք չունեն օգտվել այն ռեստորաններից ու ճաշարաններից, որտեղ սպիտակամորթներն են հաճախում։ Նրանց արգելված է երթևեկել տրանսպորտի այն տեսակներով, որոնցով երթևեկում են սպիտակամորթները։

Վերջերս ամերիկյան ռասիստները գենոցիդի ակտ կատարեցին Միսսիսիպի նահանգում, ոչնչացնելով նեգր բնակիչներից շատերին։

Ներկայումս գենոցիդի ակտ է կատարում Իրաքի կառավարությունը, որը դաժան և անմարդկային միջոցներով մասսայաբար ոչնչացնում է քուրդ ժողովրդին։ Այդ կապակցությամբ անգլիական «Դեյլի տելեգրաֆ» թերթը տպագրել է տեղեկություն այն մասին, որ Բաղդադի իշխանությունները Կիրկուկի շրջանի քրդական գյուղերը քանդել են 40 կիլոմետրը շառավիղով։ Դրանից առաջ իրաքյան ներկայիս բանակը ռմբակոծել է քրդական գյուղերը, իսկ հետո տանկերով ու բուլդոզերներով այն հողին հավասարեցրել։

Դեռևս հուլիսի 2-ին Փարիզում քրդերի ներկայացուցիչը հայտնեց, որ Իրաքի կառավարական ավիացիան ոչնչացրել է 167 քրդական գյուղ։

Անգլիական «Սանդի էքսպրես» թերթի հաղորդագրությամբ Իրաքում բաասիստների կողմից կազմակերպված նացիստական բանդաները միայն քաղաքներում սպանել են հարյուրավոր քուրդ կանանց և երեխաների։

Իրաքում բնակվող քուրդ ժողովուրդը միշտ էլ արաբ հայրենասերների հետ միասին պայքարել է օտարերկրյա տիրապետության դեմ և ձգտել, որ Իրաքը լինի ազատ ու անկախ։ Հայտնի է, որ քրդերը ջերմորեն պաշտպանեցին 1958 թվականի ռևոլյուցիան, որը օրենք հռչակեց արաբների ու քրդերի իրավահավասարության մասին։ Սակայն միապետության դեմ տարած հաղթանակից որոշ ժամանակ անց, գեներալ Կասըմի կառավարությունը վերացրեց դեմոկրատական իրավունքները ու 1961 թվականի վերջերին պատերազմ սկսեց քրդերի դեմ։ Քուրդ ժողովուրդը իր ազգային հերոս Մուստաֆա Բարզանիի ղեկավարությամբ պայքարի ելավ բռնադատիչների դեմ։

Իրաքում 1963 թվականի փետրվարի 8-ին տեղի ունեցավ պետական հեղաշրջում և ստեղծվեց նոր կառավարություն։ Այս նոր կառավարությունը ոչ միայն մերժեց քրդերի ինքնավար գոյության իրավունքները, այլև բնաջնջող պատերազմ սկսեց քրդերի դեմ, այսինքն՝ կատարեց գենոցիդի ակտ։

# ՍՐԱՄԻՏ ԽՈՍՔԵՐ

## «Գրքասերը»

Ամուսինները իրենց մոտ հրավիրեցին մի քանի ծանոթների։ Նրանց գալուց առաջ տան տերը սկսեց տենդորեն գրքերը վերցնել գրադարակից և թաքցնել դրանք տարբեր արկղների մեջ։

— Չլինի դու վախենում ես, թե մեր լավ ծանոթները կհափշտակեն քո գրադարանը։

— Ընդհակառակը, սիրելիս, ես վախենում եմ, որ նրանք ճանաչեն իրենց գրքերը։

## «Գիտուն» անտառապահը

Մի անտառապահ թոշակի անցավ։ Նրան փոխարինող ուղարկեցին երիտասարդ մի մասնագետի։ Ծեր անտառապահը ցույց էր տալիս երիտասարդին նրա տնտեսությունը։ Խոսք բացվեց ինքնագլուխ անտառահատման մասին։

— Լռություն, ընդհատեց նրան երիտասարդը,— ինչ որ մեկը ծառ է կտրում։

Ծեր անտառապահը ականջ դրեց։ Թխկ, թխկ, թխկ, լսվում էր անտառում։

— Է՜, դա փայտփորիկն է,— ծիծաղեց ծեր անտառապահը։

— Հետո ինչ,— նեղացավ երիտասարդը։ Թեկուզ և փայտփորիկը, մի՞թե չի կարելի նրանից կացինը խլել։

## Պաշտոնների դասավորում

Վարչության նիստին կոլտնտեսության նախագահը հարցրեց.

— Ու՞մ նշանակենք ֆերմայի վարիչ։

— Ի՛նձ,— կանչեց կարմրաթուշ մի երիտասարդ։

— Իսկ այդ դեպքում ո՞վ պետք է պահեստը տնօրինի։

— Ձեր խոնարհ ծառան,— արձագանքեց մի այլ թիկնեղ մարդ։

— Իսկ ո՞վ պետք է թեյարանը ղեկավարի։

— Ձեր եղբայրը,— բացականչեց երրորդը։

— Ու՞մ դաշտ ուղարկենք աշխատելու։

— Ինչ որ լավ բան չի ստացվում, բոլորը տղամարդկանց վզին ենք դնում,— աղմկեցին վարչության անդամները,— չէ որ հարկավոր է նաև կանանց առաջ քաշել։

## Գիտենք ձեզ, սրբերիդ

Բատրակություն էր անում Իվանը տերտերի մոտ։ Աշխատում էր նա արշալույսից մինչև վերջալույս և կոպեկներ էր ստանում, իսկ տերտերը մխիթարում էր.

— Դարդ մի անի Իվան, որ դու ինձ մոտ ծանր աշխատանք ես կատարում և քիչ ստանում։ Դրա դիմաց ես կաղոթեմ աստծուն, որպեսզի այն աշխարհում քեզ համար լավ լինի։

— Չեմ հավատում,— ասում է Իվանը,— որ այն աշխարհում լավ կլինի։ Այնտեղ ասված նմանապես կասի՝ Իվան վառիր արևը, Իվան հանգցրու լուսինը, Իվան մաքրիր երկինքը, Իվան մաքրիր աստղերը, Իվան խնձոր քաղիր հրեշտակների համար, Իվան-այստեղ, Իվան-այնտեղ։ Այնտեղ էլ ինձ ոչ մի րոպե հանգիստ չեն թողնի։

## Որպեսզի մեղսապարտ չլինի

— Տեր հայր,— դիմում է բատրակը տերտերին մեծ պասի նախօրյակին,— խոմ մեղք չի լինի, եթե ես այսօր ընթրիքին միս ուտեմ, իսկ առավոտյան ուտեմ միս այն մնացորդները, որոնք ատամներիս մեջ կմնան։

— Մեղքը, որդյակ իմ, մեծ չի լինի։

... Երեկոյան բատրակը ատամների մեջ առավ տապակած խոճկորը և պառկեց քնելու։

## Տասնապատիկը

Լինում է չի լինում մի տերտեր, որն ունենում է ինը կով։ Նա ցանկանում էր որ տասը լիներ։ Գնում է նա մի գյուղացու մոտ և ասում.

— Տուր ինձ քո կովը, քեզ աստված տասնապատիկը կտա, և վերցնում է կովը։ Գյուղացին սպասում, սպասում է, բայց աստված տասնապատիկը չի տալիս։ Մեկ անգամ, երբ տերտերի բատրակը արոտավայրից տուն էր քշում կովերը և գյուղացու կովը մտնում է նրա բակը, իսկ նրա հետևից էլ տերտերի բոլոր կովերը, նա այդ ամենը տանում է իր բակը։ Եվ ահա գալիս է տերտերը ու ասում.

— Տուր իմ կովերը։

Իսկ գյուղացին պատասխանում է.

— Դա աստված է ինձ տասնապատիկ ուղարկել։



Ինդեքս՝ 77704

# ՀԵՏԱՔՐՔԻՐ Է ԻՄԱՆԱԼ

Սովետական Միությունում ավելի քան 40 ազգություններ գրեր են ստացել Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայից հետո։

---

Հաշվումները ցույց են տալիս, որ մարդը տարեկան խմում է մեկ տոննայից ավելի ջուր (բարեխառն կլիմայի պայմաններում) և իր կենցաղային պահանջները բավարարելու համար տարեկան ծախսում է ավելի քան 300 տոննա ջուր։

---

Թուղթը Հայաստանում հայտնի է եղել 10-րդ դարում, իսկ Եվրոպայում՝ 11-րդ դարում։ Այժմ մեր երկրում արտադրվում է մոտ 200 տեսակ թուղթ։

---

Սովետական առաջին տանկը կառուցվել է 1920 թվականի օգոստոսի 31-ին Սորմովոյի հռչակավոր գործարանում։

---

«Նրանիտ» սինթետիկ մանրաթելերը ստացվում են բնական գազից։ Նրանք 5-10 անգամ ամուր են բրդից, ունեն նուրբ, գեղեցիկ տեսք, հեշտությամբ լվացվում են, արագ չորանում և չեն գունաթափվում։

«Նրանիտը» մշակվել Հայաստանի քիմիայի գիտա-հետազոտական նախագծային ինստիտուտում։

---

Դեռևս երկու տարի առաջ ՍՍՌՄ—ում կար ավելի քան 110 հազար կին գիտական աշխատող, այդ թվում 700 ակադեմիկոս։ Միայն Մոսկվայի Պետական համալսարանում կա հազարից ավելի կին դասախոս։

---

խմբագիր՝ Վ. խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

**Отдел идеологической работы ЦК КП Армении**

**АГИТАТОРИ БЛОКНОТ**

**№ 15**

**1963**

ՎՖ 10336 Պատվեր 734 Տիրաժ 8024

Հանձնված է արտադրության 30/VII 1963 թ.
Ստորագրված է տպագրության 7/VIII 1963 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 8 կոպ.։